ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Դ

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ – 2009

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Դ., Քննական պատմություն Հայոց/Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. Եր.: ԵՊՀ հրատ., 2009.- 720 էջ + 2 ներդիր:

*Նիկողայոս Ադոնցի երկերի չորրորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի «կարապի երգը»՝ մահվան նախօրյակին գրված բառահատոր «Քննական պատմություն Հայոց»-ի առաջին՝ «Հայաստանի պատմություն: Ակունքները. X-VI դդ. Ք. ա.» հատորը, ինչպես նաև հայ ժողովրդի կազմավորմանը վերաբերող հոդվածները: Ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում նաև անավարտ մնացած երկրորդ-երրորդ հատորներից առանձին՝ առավել ամբողջական հատվածներ:*

*Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:*

**ԳՄԴ 63.3(2Հ)**

**ISBN 978-5-8084-1146-3**

© Հովհաննիսյան Պ. Հ., 2009 թ.
© ԵՊՀ, հրատարակչություն, 2009 թ.



FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

**Հովհաննիսյան Պ. Հ.**
**Մադոյան Ա. Գ.**
**Ստեփանյան Պ. Գ.**

*Հատորը հրատարակության պատրաստեց*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ**

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

**(հատվածներ, նյութեր երկրորդ և երրորդ հատորներից)**

## III. [ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

(Ք. հ. II դ.-III դ. սկզբը)]

(էջ 523)

Գրված է 1940-1941 թվականներին Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի՝ պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, գզրոց Բ, թղթածրար 2):

Բնագիրը, որն ունի 23×30 սմ մեծություն, գրված է 15 թերթիկների վրա: Տպագրվում է Ա. Ա. Խաչատրյանի թարգմանությամբ:

Տպագրության հանգամանքների մասին տե՛ս աստ, էջ 611:

II-III դարերի իրադարձություններին նվիրված այս նյութից բացի, թողոնում առկա են նաև Ք. հ. I դարի Հայոց պատմությանը վերաբերող «Հայ Արշակունիների թագավորության կազմավորումը. Ք. հ. 12-66 թթ.» (ֆրանսերեն, 40 էջ), «Հայ-պարթևական հարաբերությունները Ք. հ. 16-

66 թթ.» (ֆրանսերեն, 60 էջ), «Տրդատ I Արշակունու ճանապարհորդությունը Հռոմ և Արտաշատի նորոգումը» (ֆրանսերեն, 7 էջ) նյութերը, որոնց հրատարակումը նպատակահարմար չգտանք՝ բազմաթիվ էջերի կորուստների պատճառով: Այնուհանդերձ, իրողությունն ապացուցում է, որ սա այն պակասող օղակն է, որ նկատվում է Ք. ա. IV-I դարերի և Ք. հ. II-III դարերի միջև:

## III. [ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ (Ք. հ. II դ.-III դ. սկիզբ)]

**Անտոնինոս Պիոս** (138-161):

**Cass. Dio,** 69: Փարասման Իբերացին Հռոմ եկավ կնոջ հետ: **Անտոնինոսը** ընդարձակեց նրա իշխանությունը և թույլատրեց զոհաբերություն մատուցել Կապիտոլիոնում: Բելոնայի (Ἐυνείῳ) տաճարում (1) կանգնեցրեց մի ձիարձան և մասնակցեց այդ տիրակալի, նրա որդու և իբերական այլ երևելիների զինավարժություններին:

**Մարկոս Ավրելիոս** (161-180):

**Cass. Dio,** 71. 161 թ.: Մարկոս Ավրելիոսը կայսերակից ընտրեց **Լուկիոս Վերոսին,** նրան ամուսնացրեց իր դստեր՝ Լուկիլլայի հետ և ուղարկեց զորավիգ լինելու պարթևների դեմ պատերազմում:

162 թ.: «[Պարթևաց] Վաղարշը (2) վերսկսեց պատերազմը: Բոլոր կողմերից շրջափակելով հռոմեական մի ամբողջ լեգեոն, որ Սեվերիանոս հյուպատոսի օրոք կայազորային ծառայության մեջ էր Հայկական Ելեգեա ամրոցում (3), նա նետերի տարափով ոչնչացրեց այդ լեգեոնն ու նրա առաջնորդներին, և, դեռ ավելին, առաջացավ դեպի Ասորիքի քաղաքները, որտեղ ահ ու սարսափ տարածեց: Լուկիոսը [1] եկավ Անտիոք, զգալի թվով զինվորներ հավաքագրեց և հրամանատարության ներքո ունենալով լավագույն զորավարներին[2]՝ ինքն էլ ճամբարեց այդ քաղաքում, որպեսզի կարգուկանոն հաստատի ու կենտրոնացնի պատերազմի համար անհրաժեշտ միջոցներ, և զորքերը վստահեց Կասսիոսին:

---

[1] Ըստ Հուլիոս Կապիտոլինոսի, *Մարկոս Անտոնինոս* 8 և 20, *Վերոս* 4, Լուկիոսը ձմեռը հավանաբար անցկացրել է Լավոդիկեայում, իսկ ամառը՝ Անտիոքում և Դափնեում, բազմատեսակ հաճույքների ու խրախճանքների մեջ, մինչդեռ Անտոնինոսը Հռոմում զանազան օգտակար միջոցառումներ էր ձեռնարկում պատերազմի համար, *տես նաև՝ Սուիդաս*, Βῆρος:

[2] **Julii Capitolini,** Verus, 7. Duces autem confecerunt Parthicum bellum Statius Priscus, Avidius Cassius et Martius Varus per quadriennium ita ut Babylonem et Armeniam vindicarent [Պարթևական պատերազմը չորս տարվա ընթացքում ավարտեցին Ստատիոս Պրիսկոս, Ավիդիոս Կասսիոս ու Մարտիոս Վերոս զորահրամանատարները՝ և այնպես, որ նվաճեցին Բաբելոնն ու Հայաստանը]:

165 թ.: Վերջինս քաջաբար դիմադրեց Վաղարշի գրոհին, և քանի որ այս քաջավորի դաշնակիցների շրջանում դասալիքություն սկսվեց, նրան էլ հետապնդեց նահանջելիս: Առաջացավ մինչև Սելևկիա և Տիզբոն, ավերեց Սելևկիան` հրո ճարակ դարձնելով, և գետնին հավասարեցրեց Վաղարշի պալատը Տիզբոնում»[1]:

**Cass.** Dio, 71, 2-3.

'Ο γὰρ Οὐολόγαισος πολέμον ἦρξε, καὶ στρατόπεδόν τε ὅλον 'Ρωμαϊκὸν τὸ ὑπὸ Σεβηριανῷ τεταγμένον ἐν τῇ 'Ελεγείᾳ, χωρίῳ τινὶ τῆς 'Αρμενίας, περισχὼν πάντόθεν αὐτοῖς ἡγεμόσι κατετόξευσε καὶ διέφθειρε, καὶ τῆς Συρίας ταῖς πόλεσι πολὺς ἐπῄει καὶ φοβερός. 'Ο οὖν Λούκιος ἐλθὼν ἐς 'Αντιόχειαν καὶ πλείστους στρατιώτας συλλέξας, καὶ τοὺς ἀρίστους τῶν ἡγεμόνων ὑφ' ἑαυτὸν ἔχων, αὐτὸς μὲν ἐν τῇ πόλει ἐκάθητο διατάττων ἕκαστα καὶ τὰς τοῦ πολέμου χορηγίας ἀθροίζων, Κασσίῳ δὲ τὰ στρατεύματα ἐπέτρεψε. καὶ ὃς ἐπιόντα τε τὸν Οὐολογαίσον γενναίως ὑπέμεινε, καὶ τέλος ἐγκαταλειφθέντα ὑπὸ τῶν συμμάχων καὶ ὀπίσω ἀναχωρήσαντα ἐπεδίοξε, μέχρι τε Σελευκείας καὶ Κτησιφῶντος ἤλασε, καὶ τήν τε Σελεύκειαν διέφθειρεν ἐμπρήσας, καὶ τὰ τοῦ Οὐολογαίσου βασίλεια τὰ ἐν τῇ Κτησιφῶντι κατέσκαψεν.

Սակայն վերադառնալիս շատ զինվորներ կորցրեց` սովի ու հիվանդության պատճառով: Համենայն դեպս` զորքի մնացորդի հետ վերադարձավ Ասորիք: Հետագայում Լուկիոսը դավադրություն կազմակերպեց իր անձերոջ` Մարկոս Ավրելիոսի դեմ, սակայն մահացավ թույնից (Jo. Xiphilinus).

164 թ.: «Մարտիոս Վերոսը Թուկիդիդեսին ուղարկեց Սոհեմոսին Հայաստան բերելու (4): Այդ զորավարն իր զենքի ահուսարսափով և բոլոր հան-

[1] **Julii Capitolini,** Marcus Antoninus 8. Fuit eo tempore etiam Parthicum bellum, quod Vologaesus paratum sub Pio, Marci et Veri tempore indixit, fugato Attidio Corneliano, qui Syriam tunc administrabat. [Այդ նույն ժամանակ եղավ և Պարթևական պատերազմը, որը Վաղարշը պատրաստում էր դեռ Պիոսի, բայց սկսեց Մարկոսի և Վերոսի օրոք, փախուստի մատնելով Ատտիդիոս Կորնելիանոսին, Ասորիքի կառավարչին]: Նույնը, Verus, 6. ... quum interfecto legato, caesis legionibus, Syriis defectionem cogitantibus, Oriens vastaretur. [«երբ սպանվեց լեգատը, կոտորվեցին լեգիոնները, Ասորիքի<իշխանավորները>մտադիր էին անջատվել, և Արևելքը ենթարկվում էր կողոպուտի]:

զամանքներից օգտվելու ճարպկությամբ ճշգրիտ կատարեց իր առաքելությունը: Ինչ վերաբերում է Մարտիոսին՝ նա ոչ միայն ընդունակ էր զենքով հնազանդեցնելու թշնամիներին (ինչը զորավարի առաքինությունն է), արագորեն նրանց առաջն առնելու կամ խորամանկորեն խաբելու, այլև հավատացնելու համոզիչ խոսքով, գայթակղելու ճոխ նվերներով և հույսի գրավչությամբ: Այն ամենի մեջ, ինչ անում էր և այն ամենի մեջ, ինչ ասում էր, կար շնորհ, որ հանգստացնում էր յուրաքանչյուրի բորբոքվածությունն ու զայրույթը և բորբոքում հույսը: Նա գիտեր նաև շողոքորթելու, նվերներ մատուցելու և սեղանի շուրջ հրավիրելու պահը: Դեռ ավելին՝ վարքով դրսևորվող եռանդը, թշնամիների դեմ գրոհներում տոկուն ժրաջանությունը բարբարոսներին հասկացնում էին, որ իրենց ավելի ձեռնտու էր նրա բարեկամությունը, քան ատելությունը: Եվ այսպիսով, ժամանելով Նոր քաղաք (5), որը զբաղեցնում էր Պրիսկոսից[1] հետո հաստատված հռոմեական մի կայազոր, և իր խոսքերով ու գործողություններով հանդարտեցնելով խռովության փորձը, նա այդ քաղաքը դարձրեց Հայաստանի մայրաքաղաք»:

***Սուիդաս (Suidae Lexicon)***, v. Μάρτιος

Ὅτι Μάρτιος Βῆρος τὸν Θουκυδίδην ἐκπέμπει καταγαγεῖν Σύαιμον εἰς Ἀρμενίαν· ὅς δέει τῶν ὅπλων καὶ τῇ οἰκείᾳ περὶ πάντα τὰ προσπίπτοντα εὐβουλίᾳ τοῦ πρόσω εἴχετο ἐρρωμένως. ἦν δὲ ἱκανὸς ὁ Μάρτιος οὐ μόνον ὅπλοις βιάσασθαι τοὺς ἀντιπολέμους ἢ ὀξύτητι προλαβεῖν ἢ ἀπάτῃ κατασοφίσασθαι, ἥπερ ἐστὶ στρατηγῶν ἀλκή, ἀλλὰ καὶ λόγῳ πιθανῷ πεῖσαι καὶ δωρεαῖς μεγαλόφροσιν οἰκειώσασθαι καὶ ἐλπίδι ἀγαθῇ δελεάσαι. χάρις τε ἦν ἐπὶ πᾶσι τοῖς πρασσομένοις ὑπ' αὐτοῦ καὶ λεγομένοις, τὸ μὲν ἀγανακτοῦν ἑκάστου καὶ τὸ θυμούμενον παραμυθουμένη, τὸ δὲ ἐλπίζον ἔτι μᾶλλον αὔξουσα. κολακείας τε δώρων καὶ τῆς παρὰ τραπέζαις δεξιώσεως καιρὸν ᾔδει. οἷς προσὸν τὸ πρὸς τὰς πράξεις σύντονον καὶ τὸ πρὸς τοὺς ἐχθροὺς σὺν ὀξύτητι δραστήριον, αἱρετώτερον ἐδείκνυε τοῖς βαρβάροις εἶναι τῆς φιλίας αὐτοῦ μᾶλλον ἢ τῆς ἔχθρας ἀντιποιεῖσθαι. ἀφικόμενος οὖν ἐς τὴν Καινὴν πόλιν, ἣν φρουρὰ Ῥωμαίων κατεῖχεν ἐκ Πρίσκου καταστᾶσα, νεωτερίζειν

[1] **Julii Capitolini**, Marcus Antoninus, 9: Gestae sunt res in Armeniae prospere per Statium Priscum, Artaxatis captis. [Հայաստանում հաջողությամբ գործում էր Ստատիոս Պրիսկոսը՝ <նրա օրոք> գրավվել է Արտաշատը]:

πειρωμένους λόγῳ τε καὶ ἔργῳ σωφρονίσας ἀπέφηνε πρώτην εἶναι τῆς ᾿Αρμενίας.

Բակուրը (6) եղբոր՝ Միհրդատի (Մերիքադի) հետ մեկնեց Հռոմ. եղբոր գերեզմանի վրա նա մեզ համար թողել է մակագրություն [«..<ես,>Ավրելիոս Պակորոս, Հայաստանի մեծն արքա, քարաղագաղ գնեցի իմ քաղցր եղբոր Ավրելիոս Միհրդատի համար, որ ապրեց ինձ հետ հիսունվեց տարի և երկու ամիս »].

Θ.Κ.| Αὐρήλιος Πάκορος βασι|λεὺς μέγας τῆς ᾿Αρ|μενίας ἠγόρακα σαρ|κοφάγον Αὐρη(λίῳ) Μεριθά|τι ἀδελφῷ γλυκύ|τάτῳ ζήσαντι| σὺν ἐμοὶ ἔτη νς′ μή<νας> β′

Corpus Inscriptionum Graecorum, 6559. Georg Kaibel n° 1472, 1890.

**Թ. Մոմզեն,** Հռոմի պատմություն, հատ. V, գիրք 8-րդ, Ք. հ. 164 թ.:

Մարկոս Ավրելիոսը Կասսիոսին հանձնեց ամբողջ Ասիայի կառավարումը, ինքն անձամբ պատերազմ մղեց Հիստերի բարբարոսների, յազիգների և մարկոմանների դեմ:

*172/173 թ.*: Ֆուրտիոս թագավորին վտարելուց հետո, քվադներն իրենց տիրակալ նշանակեցին Արիոգայսոսին:

καὶ τὸν βασιλέα σφῶν Φούρτιον ἐκβαλόντες ᾿Αριόγαισον αὐτοὶ ἐφ᾿ ἑαυτῶν βασιλέα σφίσιν ἐστήσαντο.

Արիոգայսոսի դեմ վրդովված՝ Մարկոս Ավրելիոսը հրապարակավ 1000 ոսկեդրամ խոստացավ նրան, ով այդ տիրակալին ողջ կբերի, և 500՝ նրան, ով իրեն ցույց կտա նրա կտրած գլուխը:

Մյուս դեպքերում նա իրեն մարդասիրաբար էր պահում, նույնիսկ՝ ամենաոխերիմ թշնամիների նկատմամբ:

Փոխանակ սպանել տալու սատրապ Տրդատին (7), որը մեղադրվում էր Հայաստանում հուզումներ առաջացնելու, հենիոքների թագավորին սպանելու և [Տրդատի] գործողությունները դատապարտող Վերոսին[1] սրով սպառնալու համար, նրան պարզապես աքսորեց Բրիտանիա:

---

[1] Խոսքը Մարտիոս Վերոսի մասին է, որը 175 թ. Կապադովկիայի կառավարիչն էր (**Cass. Dio** 72, 22: τῆς Καππαδοκίας ἄρχων), իսկ 176 թ. դարձավ Ասորիքի կառավարիչը (*նույն տեղում*, 29), կայսրի դեմ Կասսիոսի ընդվզման կապակցությամբ:

**Cass. Dio** 72.*14*. καίτοι τά τε ἄλλα ἀεὶ ποτε φιλανθρώπως καὶ τοῖς πολεμιοτάτοις χρώμενος, καὶ Τιριδάτην σατράπην τὰ τε ἐν τῇ Ἀρμενίᾳ ταράξαντα καὶ τὸν τῶν Ἡνιόχων βασιλέα[1] ἀποσφάξαντα, τῷ τε Οὐήρῳ ἐπιτιμῶντι οἱ περὶ τούτων τὸ ξίφος ἐπανατεινάμενον, μὴ κτείνας ἀλλ' ἐς Βρεττανίαν πέμψας (Exc., V. 304).

**Ավրելիոս Կոմմոդոս Անտոնինոս** (180-193, 1 հունվարի):

**Սեպտիմիոս Սեվերոս** (իշխանության համար պայքար Պերտինաքսի՝ սպանված 193 թ. ապրիլին, Դիդիոս Սեվերոս Հուլիանոսի † հունիսի 2-ին, Նիգերի † 194 թ., միջև) 193-211, 4 փետրվարի:

**Կարակալլա,** նրա որդին՝ 211-217, 8 ապրիլի:

*195 թ.*: Քաղաքացիական պատերազմից հետո Սեվերոսը, «փառատենչությամբ համակված»՝ ἐπιθυμίᾳ δόξης, իր զենքերն ուղղեց բարբարոսների՝ օսրոենցիների, ադիաբենցիների և արաբների դեմ: Առաջին երկուսը, որոնք ըմբոստացել էին և պաշարել Մծբինը, պարտություն կրեցին Սեվերոսից, իսկ Սեվերոսի հակառակորդ Նիգերի մահվանից հետո դեսպանություն ուղարկեցին ոչ թե իրենց մեղքերի համար ներողություն հայցելու, այլ նրա բարեհաճությունը խնդրելու՝ պատրվակելով, որ իրենք, տվյալ դեպքում, գործել են նրա շահերից ելնելով: Իրոք,- ասում էին նրանք,- նրա պատճառով են սպանել Նիգերի կողմնակից զինվորներին: Նրանք նաև նվերներ ուղարկեցին Սեվերոսին՝ խոստանալով վերադարձնել գերիներին և ավյուննների մնացորդները: Այդուհանդերձ, չէին ցանկանում ո՛չ լքել իրենց գրաված վայրերը, ո՛չ էլ կայազորներ ընդունել: Բնավ չէին ցանկանում: Պահանջում էին, որ իրենց երկրում թողնված բոլոր զինվորները հետ քաշվեն: Այս շարժառիթներով է պատերազմ ձեռնարկվել նրանց դեմ:

Սեվերոսն անցավ Եփրատը և հայտնվեց թշնամական տարածքում: Նա գնաց Մծբին և մնաց այնտեղ: Լատերանոսին, Կանդիդոսին և Լայտոսին ուղարկեց բարբարոսների դեմ, մեկին՝ մի կողմից, հաջորդին՝ մյուս: Հարձակվելով թշնամու վրա՝ նրանք ամայացրին տարածքները և քաղաքներ նվաճեցին:

---

[1] Տրայանոսի օրոք դա 'Αγχίαλος՝ Անքիալոսն էր: Հմմտ. Մալալասի մոտ՝ պարքև բազավորի դեսպանի անունը: Ցազիգների բազավորները նույնպես կրում էին իրանական անուններ՝ Βανάδασπος , Ζαντικός (Cass. Dio):

196 թ. Սեվերոսն իր բանակը կրկին բաժանելով երեք զորաբանակի՝ Լայտոսի, Անիլինիոսի և Պրոբոսի հրամանատարությամբ, ուղղորդեց Ադիաբենեի դեմ: Նրանք այստեղ ներխուժեցին ո՛չ առանց դժվարության: Սեվերոսը արտոնություններ տվեց Մծբինին, որի կառավարումը վստահեց մի «հեծյալի»՝ մեծատոհմիկի, պարծենալով, թե ընդարձակ տարածք է ավելացրել կայսրությանը, իսկ այդ քաղաքը Ասորիքի համար դարձրել է պատվար:

Սակայն իրադարձությունները համոզիչ կերպով ցույց տվեցին, որ այդ ձեռքբերումը հռոմեացիների համար եղել է «շարունակական պատերազմների, ինչպես նաև բազում ծախսերի պատճառ, քանզի այն քիչ բան է բերում և շատ ծախսերի տեղիք տալիս, իսկ մենք, պատերազմի մեջ լինելով մեր հարևանների՝ մարերի ու պարթևների հետ, մարտնչում ենք, այսպես ասած, ամեն պահ, այդ տարածքը պաշտպանելու համար» (Cass. Dion, 75, 1-3):

Այս պատերազմը հազիվ ավարտված՝ Սեվերոսը քաղաքացիական պատերազմի մեջ մտավ Կեսար Ալբինոսի դեմ: Վերջինս պարտությունից հետո ինքնասպան եղավ:

Այնուհետև, 198 թ. Սեվերոսն իր զենքն ուղղեց պարթևների դեմ: Մինչդեռ նա զբաղված էր քաղաքացիական պատերազմով, պարթևերն անպատիժ նվաճել էին Միջագետքի տերերը և գրավել առանց Լայտոսի պաշտպանության մնացած Մծբին քաղաքը, որն էլ փրկեց այն: Լսելով կայսրի պատրաստության մասին՝ պարթևները քաշվեցին իրենց երկիրը («նրանց առաջնորդը Վաղարշն (8) էր, որի եղբայրը Սեվերոսի հետ էր» (ἦρχε δὲ αὐτῶν Οὐολόγαισος, οὗ ἀδελφὸς συνῆν τῷ Σεουήρῳ): Սեվերոսը կարեց անցավ Եփրատը, գրավեց Սելևկիան ու Բաբելոնը: Գրավեց նաև Տիզբոնը և իր զինվորներին թույլատրեց թալանել այն, կոտորեց մեծ քանակով բնակչություն և կենդանի գերեվարեց մոտավորապես 100 հազար մարդու: Այդուհանդերձ չհետապնդեց Վաղարշին և չպահեց Տիզբոնը, «ասես նրա արշավանքի միակ նպատակն այդ քաղաքը թալանելն էր» ἀλλ᾽ ὥσπερ ἐπὶ τοῦτο μόνον ἐστρατευκὼς ἵν᾽ αὐτὴν διαρπάσῃ ᾤχετο (Cass. Dio, 76, 9):

Սեվերոսը փորձ կատարեց գրավել Հատրան, սակայն անհաջողության մատնվեց: Շարժվեց դեպի Պաղեստին, «այնուհետև Վերին Եգիպտոս՝ բարձրանալով Նեղոսն ի վեր» (καὶ ἐς τὴν Αἴγυπτον τὴν ἄνω διὰ τοῦ Νείλου ἀνέπλευσε) և ամբողջությամբ գրավեց այն: Ինչ-որ հիվանդություն նրան խանգարեց հասնելու Եթովպիայի սահմանները: (Cass. Dio,76, 13):

**Անտոնինոս Կարակալլա (211-217):**

**Cass.** Dio, 77, 12.

*213 թ.*: «Օսրոենեի թագավոր Աբգարը, երբ դարձավ իր ազգակիցների առաջնորդը, նրանց գլխավորներին չազատեց տառապանքներից: Արտաքուստ նրանց ստիպում էր ընդունել հռոմեացիների սովորույթները, բայց, իրականում, անսահմանորեն չարաշահում էր իր իշխանությունը նրանց նկատմամբ»:

ὅτι Ἄγβαρος ὁ τῶν Ὀσροηνῶν βασιλεὺς ἐπειδὴ ἅπαξ ἐν κράτει τῶν ὁμοφύλων ἐγένετο, οὐδὲν ὅ τι δεινοτάτων τοὺς προέχοντας αὐτῶν οὐκ ἐξειργάσατο. λόγῳ μὲν ἐς τὰ τῶν Ῥωμαίων ἤθη μεθίστασθαι ἠνάγκασεν, ἔργῳ δὲ τῆς κατ᾽ αὐτῶν ἐξουσίας ἀπλήστως ἐνεφορεῖτο.

«[Անտոնինոս Կարակալլա կայսրը] օսրոենցիների թագավոր Աբգարին նենգորեն հորդորելով այցելել իրեն իբրև բարեկամի, այնուհետև բռնեց նրան, զնդան նետեց և այսկերպ զավթեց Օսրոենեն, որն այլևս թագավոր չուներ» (ἠπατηκὼς γὰρ τὸν βασιλέα τῶν Ὀσροηνῶν Αὔγαρον ὡς δὴ παρὰ φίλον αὐτὸν ἥκειν, ἔπειτα συλλαβὼν ἔδησε, καὶ τὴν Ὀσροηνὴν οὕτως ἀβασίλευτον οὖσαν λοιπὸν ἐχειρώσατο).

«Ինչ վերաբերում է Հայաստանի թագավորին (9), որը տարաձայնությունների մեջ էր իր իսկ որդիների հետ, նրան ևս բարեկամական նամակներով հրավիրեց՝ իրենց միջև համաձայնություն հաստատելու պատրվակով, և հետը վարվեց այնպես, ինչպես վարվել էր Աբգարի հետ: Այդուհանդերձ, հայերը, որ ամենևին չէին ցանկանում անցնել նրա կողմը, զենքի դիմեցին և նրանցից ոչ մեկը բնավ չվստահեց նրան, այնպես որ նա փորձով համոզվեց, թե իր բարեկամների նկատմամբ նենգ գործունեությունը որքան վնասակար է կայսրի համար»:

τὸν δὲ τῶν Ἀρμενίων βασιλέα διαφερόμενον μετὰ τῶν ἰδίων παίδων ἐκάλεσε μὲν φιλικοῖς γράμμασιν ὡς δὴ εἰρηνεύσων αὐτούς, ἔδρασε δὲ καὶ περὶ τούτους ἃ καὶ περὶ τὸν Αὔγαρον. οὐ μὴν καὶ οἱ Ἀρμένιοι προσεχώρησαν αὐτῷ ἀλλ᾽ ἐς ὅπλα ἐχώρησαν καὶ οὐκετ οὐδεὶς αὐῒῳ τὸ παράπαν οὐδὲν ἐπίστευσεν, ὥστε καὶ ἔργῳ αὐτὸν ἐκμαθεῖν ὅσον αὐτοκράτορι ζημίωμά ἐστι τό τι ἀπατηλὸν πρὸς φίλους πρᾶξαι (**Cass. Dio**, *77, 12*).

Նա պարծենում էր, որ «պարթևների թագավոր Վաղարշի (10) մահվանից հետո նրա որդիները[1] կռվում էին գահի համար» (Οὐολογαίσου τοῦ τῶν Πάρθων βασιλέως τετελευτήσαντος οἱ παῖδες περὶ τῆς βασιλείας ἐμάχοντο...)՝ իր անձնական մտադրությունը վերագրելով այն, ինչը պատահականության արգասիք էր, մեծ հաճույք էր ստանում՝ տեսնելով եղբայրների երկպառակությունը և օտարների երկուստեք կոտորածները:

Պարթև արքայորդիների վերաբերյալ չերկմտեց գրելու Սենատին՝ եղբայրներ են և երկպառակության մեջ են, այդ եղբայրների վատ հարաբերությունները մեծ դժբախտություններ կպատճառեն պարթևական թագավորությանը. ասես այդ վատ հարաբերությունները, որ կարող էին բարբարոս պետության կործանման պատճառ լինել՝ հռոմեական կայսրության փրկությունն էին:

### Պատերազմի նախապատրաստություն ընդդեմ հայերի և պարթևների

*Ք. հ. 212 թ.:* Կարակալլան Ալեքսանդր [Մակեդոնացու] հանդեպ այնպիսի կիրք ուներ, որ կազմեց 16.000 մարդուց բաղկացած փաղանգ, բոլորն էլ՝ մակեդոնացիներ, անվանեց Ալեքսանդրի անունով, զինեց այդ զորավարի ժամանակաշրջանում գործածվող զենքերով, այն է՝ եզան անմշակ կաշվից սաղավարտ, կտավատի եռեքտակ գործվածքից զրահազգեստ, պղնձե վահան, երկար նիզակ, կարճ նետ, ռնապաններ և սուր. κράνος ὠμοβόειον, θώραξ λινοῦς τρίμιτος, ἀσπὶς χαλκῆ, δόρυ μακρόν, αἰχμὴ βραχεῖα, κρηπῖδες, ξίφος (**Cass. Dio**, 77, 7):

**214-215 թթ.** Նա ձմեռեց Նիկոմեդիայում, շարային վարժություններով մարզեց մակեդոնական փաղանգին և հայերի ու պարթևների դեմ պատերազմի նպատակով ստեղծեց ռազմական երկու մեծ մեքենա (**Cass. Dio**, *77, 18*):

*215 թ.:* Արշավանքի ժամանակ պարթևների հետ ընդհարման շարժառիթը եղավ այն, որ Վաղարշը հրաժարվում է իրեն հանձնել իր պահանջած Տրդատին (11), ինչպես նաև ոմն Անտիոքոսին. ἐκστρατεύσαντι δὲ αὐτῷ κατὰ τῶν Πάρθων πρόφασις τοῦ πολέμου ἦν ὅτι Οὐολόγαισος τὸν

[1] Վաղարշ և Արտավան, 213-227:

τε Τιριδάτην καὶ ᾿Αντίοχόν τινα μετ᾿ αὐτοῦ ἐξαιτήσαντι αὐτῷ οὐκ ἐξέδωκεν (**Cass.** Dio, 77, 19):

Անտիոքոսը ծագումով Կիլիկիայից էր և սկզբում ձևացնում էր, թե զբաղվում է կինիկյան փիլիսոփայությամբ, ինչը նրան հնարավորություն էր ընձեռել պատերազմի ժամանակ բազմաթիվ ծառայություններ մատուցել զինվորներին. նրանց [սովորեցնում] էր կռփվել ցրտի դեմ՝ նետվելով ձյան մեջ և նրանում թավալվելով, ինչի համար նվերների և պատիվների էր արժանացել Սեվերոսի և հենց իր՝ Անտոնինոսի կողմից:

Սակայն դրանից սնապարծությամբ համակվելով՝ նա միացավ Տրդատին[1] և նրա հետ միասին անցավ պարթևների արքայի կողմը:

ἐπαρθεὶς δὲ ἐπὶ τούτοις τῷ Τιριδάτῃ συνεξητάσθη, καὶ μετ᾿ αὐτοῦ πρὸς τὸν Πάρθον ηὐτομόλησε (**Cass.** Dio 77, 19. **Joannis Xiphilini** Epitoma, 335. Suidae lexicon: ᾿Αντίοχος ὁ αὐτόμολος «Անտիոքոս փախստական»):

«Երբ Պարթևը սարսափահար հանձնեց Տրդատին ու Անտիոքոսին, Անտոնինոսն անմիջապես հրաժարվեց իր արշավանքից»: τοῦ δὲ Πάρθου φοβηθέντος καὶ τὸν Τιριδάτην καὶ τὸν ᾿Αντίοχον ἐκδόντος, ἀφῆκε τὴν στρατείαν ἐν τῷ παραυτίκα (**Cass.** Dio, 77, 21).

Բայց Թեոկրիտոսին մի զորագնդի հետ ուղարկելով հայերի դեմ՝ պարտվեց այս ժողովրդից, ինչը տարավ որպես ծանր անհաջողություն: Այս Թեոկրիտոսը, որ ստրուկից է ծնվել և մանկությունից ի վեր պարել բեմի վրա, Անտոնինոսի օրոք հասավ այնպիսի հզորության, որ պրետորության երկու պրեֆեկտները նրա համեմատ ոչինչ էին: Մեկ այլ կեսարացի[2] և՝ Էպագաթոսը, իշխանությամբ ու հանդգնությամբ հավասարվեց նրան: Եվ այսպես, Թեոկրիտոսը մահապատժի ենթարկեց բազմաթիվ քաղաքացիների.

*Ք. հ. 216 թ.*: Այնուհետև իր բանակն առաջնորդելով պարթևների երկիր, այն պատճառաբանությամբ, թե Արտավանը չի ցանկանում իրեն տալ իր դստերը, որի ձեռքը նա խնդրել էր (Արտավանին, իրոք, քաջ հայտնի էր, որ առերևույթ էր իր դստեր հետ կայսրի ամուսնության ցանկությունը, իրականում նա ուզում էր տիրանալ պարթևների թագավորությանը), Ան-

[1] էջ 511: Ըստ Յուստիի [F. **Justi**, Iranische Namenbuch], այդ Տրդատը Վաղարշ V-ի և Արտավան V-ի հորեղբայրն էր, ուստիև՝ պարթև իշխան. Դա սխալ է: Տրդատը ... [նախադասությունն անավարտ է. – թարգմ.]:

[2] Թեոկրիտոսը նույնպես կեսարացի էր՝ Καισάρειος:

տոնինոսը ամայացրեց երկրի մի մեծ տարածք, որ եզերում էր Մարաստանին, հանկարծակի հարձակմամբ խորտակեց նրա ամրոցները, գրավեց Արբելան և բացելով պարթև արքաների գերեզմանները, ցաքուցրիվ արեց նրանց ոսկորները, որովհետև պարթևները նրան չառճակատեցին (**Cass. Dio**, 79, 1)։ Ըստ Հերոդիանոսի (IV, 9 et 10), պարթև արքան նախ մերժեց Անտոնինոսի պահանջը, բայց հետո, գայթակղված կայսրի պարգևներից ու երդումներից՝ նրան ընդունեց իր տիրույթներում։ Վերջինս դրանից օգտվեց՝ անակնկալ կերպով հարձակվելու և երկիրը ամայացնելու (Aelii Spartiani Vita Hadriani, *6.* per Cadusios fines et Babylonios ingressus՝ [«Կադիշցիների[1] և բաբելացիների սահմաններն անցնելով, հարձակվեց»]։

Բարբարոսները քաշվեցին Տիգրիսից այն կողմ գտնվող լեռները, որպեսզի նախապատրաստվեն պաշտպանության։ Կայսրը քողարկեց այդ նահանջը՝ պարծենալով, թե լիովին ջախջախել է նրանց, որոնց անգամ չէր էլ տեսել (ինչպես գրել է նա)։

*Ք. հ. 217 թ.*։ Պարթևներն ու մարերը, մեծաթիվ զորք հավաքելով, սպառնացին կայսրին, որովհետև նա քաջ էր՝ սպառնալիքի, և պատրաստ՝ հանդգնության, սակայն թուլամորթ էր կռվի մեջ։

217 թ. ապրիլի 8-ին Եդեսիայից մեկնելով Խառան՝ Կարակալլան սպանվեց իր զինվորների կողմից։

Հռոմի նոր կայսր Մակրինոսը՝ ծագումով մավր, ծնընդով Կեսարիայից, անհայտ ծնողների որդի էր։ Նրա մի ականջը մավրերի նման ծակ էր։ Բայց նրա չափավորությունը զուգակշռում էր նրա ստորին ծագումը։

*217 թ.*։ Մակրինոսը տեսնելով, որ Արտավանը չափազանց զայրացած է կատարվածից ու խիստ բորբոքված և մեծաթիվ զորքով ներխուժել է Միջագետք, նախ նրան իր իսկ կամքով, բարեկամական խոսքերով հանդերձ վերադարձրեց գերիներին՝ կոչ անելով խաղաղություն հաստատել և տեղի ունեցածի պատճառը բարդեց Կարակալլայի վրա։ Սակայն Արտավանը, ամենևին չցանկանալով ընդունել այդ առաջարկները, միաժամանակ նրան հրահանգեց վերականգնել կործանված ամրոցներն ու քաղաքները, ամբողջությամբ լքել Միջագետքը և հասցված մյուս վնասների, ինչպես նաև արքաների գերեզմաններն ավերելու համար հատուցել՝ Մակրինոսին արհամարհելով որպես անարժան նորելուկի և անչափ զայրանալով նրա վրա։ Մակրինոսը անգամ խորհելու ժամանակ չունեցավ՝ շարժվելով իր հակառակորդին ընդառաջ, որն արդեն հասել էր մինչև Մծբին, մարտերից մեկում պարտություն կրեց։

---

[1] **Cփոխ[ե՞լ է] Carduchi [«կորդվացիներ» ցեղանվան հետ]։**

*218 թ.*: Թե՛ իրեն հատուկ քուլամորթության և թե՛ զինվորների անկարգապահության պատճառով Մակրինոսը չհամարձակվեց շարունակել պատերազմը: Խաղաղության հասնելու համար նա շատ մեծ ծախսեր արեց, փորձում էր նվերներով իր կողմը գրավել ինչպես հենց իրեն՝ Արտավանին, այնպես էլ նրանց, ովքեր հզոր էին իր դիմաց, այնպես որ ծախսերի ամբողջ գումարը կազմեց մոտավորապես 15 միլիոն դրաքմե[1]: Արտավանը համաձայնեց բանակցել: Մակրինոսը սենատին չգրեց ճշգրիտ պատմությունն այն ամենի, ինչ տեղի էր ունեցել Արտավանի և իր միջև: Ահա թե ինչու, որոշման համաձայն, զոհաբերություններ մատուցվեցին նրա հաղթանակի պատվին և նրան շնորհվեց «Պարթևական» պատվանունը: Նա չհամաձայնեց՝ ամաչելով իբրև մականուն կրել իրեն հաղթած թշնամուց փոխառված անուն:

«Հայոց թագավորի դեմ պատերազմը նույնպես դադարեց: Համաձայնելով ընդունել Մակրինոսի ուղարկած թագը, Տրդատը ետ ստացավ Կարակալլայի [Տարավտասի] կողմից տասնմեկ ամիս բանտարկված մորը, Հայաստանից տարված ամբողջ ավարն ու Կապադովկիայում հոր ունեցվածքը (12)՝ հույս փայփայելով ստանալ նաև ամենամյա տուրք, որ իրեն վճարում էին հռոմեացիները» (13):

*218 թ.*: καὶ μέντοι καὶ τὰ κατὰ τὸν Ἀρμένιον πολεμωθέντα, ὥσπερ εἶπον, κατέστη, τοῦ [τε] Τιριδάτοῦ πεμφθὲν αὐτῷ τὸ διάδημα παρὰ τοῦ Μακρίνου λαβόντος, καὶ τὴν μητέρα, ἣν ἕνδεκα μησὶν ὁ Ταραύτας ἐν τῷ δεσμωτηρίῳ κατεσχήκει, τήν τε λείαν τὴν ἐκ τῆς Ἀρμενίας ἁλοῦσαν κομισαμένου, καὶ τὰ χωρία ὅσα ὁ πατὴρ αὐτοῦ ἐν τῇ Καππαδοκίᾳ ἐκέκτητο, τό τε [γὰρ] ἀργύριον ὃ κατ' ἔτος παρὰ τῶν Ῥωμαίων εὑρίσκετο, ἐλπίσαντος λήψεσθαι (**Cass. Dio**, 78, 27).

(Կարակալլան Վաղարշից պահանջել էր Տրդատին: Բայց հայերը զենքը վայր չէին դրել: Տրդատին հաջողվել էր ազատվել գերությունից և այդ ժամանակ նա իշխում էր Հայաստանում ):

Պարտված Մակրինոսը 218 թ. հունիսի 8-ին Էպագաթոսի միջոցով իր որդուն ուղարկեց պարթևների արքա Արտավանի մոտ (**Cass. Dio**, 78, 39):

---

[1] 50 միլիոն դինար, տե՛ս **Թ. Մոմզեն**, հատ. V, գիրք 10-րդ, էջ 264:

Բազում ժողովուրդների շրջանում ծագած շատ խռովություններ հանդարտվեցին: Բայց այն, ինչ տեղի ունեցավ Միջագետքում՝ առավել սարսափելի էր և բոլորին հիմնավոր վախ ներշնչեց:

«Արտաքսերքսես [Արտաշես, Արտաշիր] անվամբ մի պարսիկ, երեք ճակատամարտերում պարթևներին հաղթելուց և նրանց արքա Արտավանին սպանելուց հետո (14), շարժվեց դեպի Հատրա քաղաքը, որպեսզի այն հենակետ դարձնի հռոմեացիների դեմ արշավանքների համար: Թեև խորտակեց քաղաքի պարիսպները [և դարաններից բազմաթիվ զինվորներին դուրս նետեց], այնուամենայնիվ նահանջեց Մարաստան, և նվաճելով նրա [՝ինչպես և Պարթևստանի] զգալի մասը՝ [(որը՝ ուժով, որը՝ սարսափով)] շարժվեց դեպի Հայաստան: Այստեղ պարտվելով տեղացիների, [ինչ-որ] մարերի և Արտավանի զավակների կողմից, ոմանց կարծիքով՝ փախուստի դիմեց, մյուսների կարծիքով՝ հետ քաշվեց, որպեսզի նախապատրաստվի ավելի մեծ արշավանքի»:

*227p.* ʼΑρταξέρξης γὰρ τις Πέρσης τούς τε Πάρθους τρισὶ μάχαις νικήσας, καὶ τὸν βασιλέα αὐτῶν ʼΑρτάβανον ἀποκτείνας, ἐπὶ τὰ ʼΆτρα ἐπεστράτευσεν, ἐπιβασίαν ἀπʼ αὐτῶν ἐπὶ τοὺς ʼΡωμαίους ποιούμενος. καὶ τὸ μὲν τεῖχος διέρρηξεν, συχνοὺς δὲ δὴ τῶν στρατιωτῶν ἐξ ἐνέδρας ἀποβαλὼν ἐπὶ τὴν Μηδίαν μετέστη, καὶ ἐκείνης τε οὐκ ὀλίγα καὶ τῆς Παρθίας, τὰ μὲν βίᾳ τὰ δὲ καὶ φόβῳ, παραλαβὼν ἐπὶ τὴν ʼΑρμενίαν ἤλασε, κἀνταῦθα πρός τε τῶν ἐπιχωρίων καὶ πρὸς Μήδων τινῶν τῶν τε τοῦ ʼΑρταβάνου παίδων πταίσας, ὡς μὲν τινες λέγουσιν, ἔφυγεν, ὡς δʼ ἕτεροι, ἀνεχώρησε πρὸς παρασκευὴν δυνάμεως μείζονος (Cass. Dio, 80).

1. Խոսքը ռազմի աստված Էճիեսի (Արես) տաճարի մասին է: - էջ 523:

2. Նկատի ունի Պարթևաց Վաղարշ III թագավորին (148-191): - էջ 523:

3. Հայաստանի Եկեղիա, բնակավայր Կարինի մոտ, այժմ՝ Իլիջա: - էջ 523:

4. Սոհեմոսը Ասորիքի Էմեսա քաղաքի արքայիկն էր և շառավիղը Երվանդունյաց արքայատոհմի: Հայաստանում գահակալել է Տիգրան անվամբ (140-161, 164-185): - էջ 524:

5. Խոսքը Արտաշատի փոխարեն Հայաստանի մայրաքաղաք հռչակված Վաղարշապատի մասին է: - էջ 525:

6. Հայոց թագավոր Բակուր I Արշակունին (161-163): Գահընկեց արվելուց հետո տեղափոխվել է Հռոմ, որտեղ ընդունել է «Ավրելիոս» կայսերական պատվանունը: - էջ 526:

7. Ուսումնասիրողների կարծիքով այս սատրապ (նախարար) Տրդատը Մովսես Խորենացու հիշատակած (գիրք Բ, գլ. կգ) Տրդատ Բագրատունին է: - էջ 526:

8. Խոսքը Պարթևաց Վաղարշ IV արքայի (191-208) մասին է: -էջ 528:

9. Ակնարկում է Հայոց Խոսրով I թագավորին (198-216): - էջ 529:

10. Այս հատվածում խոսքը վերաբերում է Վաղարշ V-ին (208-215): - էջ 529:

11. Հավանաբար խոսքը Հայոց թագավոր Խոսրով I-ի որդի Տրդատ II-ի (217-252) մասին է: - էջ 530:

12. Խոսքն, անշուշտ, Կապադովկիայում գտնվող հայ Արշակունիներին պատկանող կալվածքների մասին է: - էջ 533:

13. Ակնարկը վերաբերում է ամենամյա այն գումարին, որ հռոմեացիները վճարում էին Հայոց թագավորին՝ Կովկասյան անցքերի պաշտպանության համար (տե՛ս **J. Marquart**, Ērānšahr nach der Geographie des Ps.-Moses Xorenac'i, Berlin, 1901, էջ 95): - էջ 533:

14. Իրադարձությունները վերաբերում են 224-226 թթ., երբ Արտաշիր Սասանյանը տապալելով Արտավան V Արշակունուն, Պարսկաստանում հաստատեց Սասանյանների արքայատոհմը: - Էջ 533: